Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Նյութեր զրույցների համար



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՄԱՐՔՍԻ—ԷՆԳԵԼՍԻ—ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

## (Ի. Վ. Ստալինի ծննդյան 76-ամյակի առթիվ)

Գ. ԿԱՊԻՐԻՆ

*Դեկտեմբերի 21-ին լրանում է Վ. Ի. Լենինի աշակերտ և նրա անմահ գործի մեծ շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի ծննդյան 76-ամյակը։ Ստալինի կյանքն ու գործունեությունն անխզելիորեն կապված են Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի և նրա մարտական ավանգարդի՝ մեծ Լենինի ստեղծած ու կոփած Կոմունիստական պարտիայի պատմության հետ։*

*Ի. Վ. Ստալինը անդուլ կերպով օգնում էր Վ. Ի. Լենինին Կոմունիստական պարտիայի կառուցման, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման, Սովետական պետության ստեղծման և ամրապնդման գործում։ Ստալինը իր համար բարձր պատիվ և իր կյանքի նպատակն էր համարում Լենինի արժանավոր աշակերտ լինելը։ «Ինչ վերաբերում է ինձ,— ասել է նա,— ապա ես Լենինի աշա-*

*կերտն եմ միայն, և իմ նպատակն է՝ լինել նրա արժանավոր աշակերտը» (Երկեր, հատոր 13, էջ 116, Հայպետհրատ)։ Ստալինը Լենինի մեջ տեսնում էր մի լեռնային արծվի, որը վախ չգիտե պայքարում, բարձրագույն տիպի ղեկավարի, որի մեջ տեսական հզորությունը զուգակցված է պրոլետարական շարժման գործնական - կազմակերպական փորձի հետ։ Խորին հարգանքով Ստալինը Լենինին անվանում էր մեր հայրը, մեր ուսուցիչը և դաստիարակը։*

*Վերհիշելով անցած ռևոլյուցիոն ուղին, Ստալինը նշում էր իր ստացած երեք մարտական ռևոլյուցիոն մկրտությունները։ Դրանցից առաջինը վերաբերում է 1898 թվականին, երբ նա Թիֆլիսի առաջավոր բանվորներից ստանում է գործնական ռևոլյուցիոն աշխատանքի առաջին դասերը։ Իր երկրորդ մարտական մկրտությունը Ստալինը կապում է Բաքվի հետ, որտեղ նավթարդյունաբերության բանվորների մեջ կատարած ռևոլյուցիոն աշխատանքի երեք տարիները (1907—1909) նրան կոփում են որպես պրակտիկ մարտիկի և տեղական պրակտիկ ղեկավարներից մեկի։ Իր երրորդ մարտական մկրտությունը Ստալինը դասում է 1917 թվականին, երբ նա պարտիայի կամքով,*



*բանտերից և աքսորներից հետո փոխադրվում է Լենինգրադ։*

*«Այնտեղ,— վերհիշում է իր ելույթներից մեկում Ստալինը,— ռուս բանվորների շրջանում, անմիջականորեն մոտիկ գտնվելով բոլոր երկրների պրոլետարների մեծ ուսուցչին՝ ընկ. Լենինին, պրոլետարիատի և բուրժուազիայի մեծ գոտեմարտերի փոթորկի մեջ, իմպերիալիստական պատերազմի պայմաններում ես առաջին անգամ սովորեցի հասկանալ, թե ինչ է նշանակում բանվոր դասակարգի մեծ պարտիայի ղեկավարներից մեկը լինել։ Այնտեղ, ռուս բանվորների՝ ճնշված ժողովուրդներին ազատագրողների և բոլոր երկրների ու ժողովուրդների պրոլետարական պայքարի նախամարտիկների շրջանում ես ստացա իմ երրորդ մարտական ռևոլյուցիոն մկրտությունը։ Այնտեղ՝ Ռուսաստանում, Լենինի ղեկավարությամբ, ես դարձա ռևոլյուցիայի վարպետներից մեկը։*

*Թույլ տվեք իմ անկեղծ, ընկերական շնորհակալությունը հայտնել իմ ռուս ուսուցիչներին և գլուխս խոնարհել իմ մեծ ուսուցչի՝ Լենինի հիշատակի առաջ» (Երկեր, հատոր 8, էջ 198, Հայպետհրատ)։*



Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Լենինի գլխավորությամբ Ռուսաստանի բանվոր դասակարգը աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած՝ կատարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, պատմության մեջ առաջին անգամ ստեղծեց բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն։

Վ. Ի. Լենինը պարտիային զինեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման պարզորոշ, գիտականորեն հիմնավորված ծրագրով, սովետական ժողովրդին ոգեշնչեց պատմական մեծ սխրագործության։ Այդ ծրագիրը նախատեսում էր սոցիալիստական ինդուստրացման ենթարկել երկիրը, ամեն կերպ զարգացնել ծանր արդյունաբերությունը, էլեկտրիֆիկացնել ամբողջ ժողովրդական տնտեսությունը, կենսագործել գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման կոոպերատիվ պլանը, կատարել կուլտուրական ռևոլյուցիա։

Կոմունիստական պարտիան իր Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ, Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ, ջախջախելով տրոցկիստներին, աջ ռեստավրատորներին և ժողովրդի մյուս թշնամիներին, հաղթահարե-



լով հսկայական դժվարություններ՝ մեր երկիրը հասցրեց սոցիալիզմի հաղթանակին։ Սովետական երկիրը վիթխարի թռիչք կատարեց՝ հետամնացությունից դեպի պրոգրես։

Մեր Հայրենիքը ինդուստրիալ-կոլտնտեսային սոցիալիստական հզոր տերություն դարձնելը վճռական նշանակություն ունեցավ Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակն ապահովելու համար։ Հայրենական պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի գործում ականավոր դեր խաղաց Կոմունիստական պարտիան, Ստալինը, որը պատերազմի շրջանում գլխավորեց Պաշտպանության Պետական Կոմիտեն և Սովետական Զինված Ուժերին։

Պատերազմը հսկայական ավերածություններ պատճառեց մեր Հայրենիքին։ Սովետական ժողովուրդը՝ ոգեշնչված Կոմունիստական պարտիայի կողմից, լիովին վերացրեց պատերազմի ծանր հետևանքները և նոր հաջողություններ ձեռք բերեց տնտեսական ու կուլտուրական շինարարության գործում, մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։

1955 թվականին ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 27 ան-

*գամ, արտադրության միջոցների արտադրությունն աճեց 60 անգամ, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 11 անգամ, մեքենաշինության արտադրանքի թողարկումն ավելացավ ավելի քան 160 անգամ։ ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը վկայում են կապիտալիստական երկրների էկոնոմիկայի հանդեպ սոցիալիստական էկոնոմիկայի ունեցած արմատական առավելությունների մասին։*

*Կոմունիզմի կառուցման լենինյան պլանի մի կարևորագույն օղակն է Սովետական Միության էլեկտրիֆիկացումը։* «Կոմունիզմը,— *ասել է Լենինը*,— դա Սովետական իշխանությունն է՝ պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան» *(Երկեր, հատոր 31, էջ 654, Հայպետհրատ)։ ԳՕԷԼՌՕ-ի հռչակավոր պլանը Վլադիմիր Իլյիչը անվանեց «Պարտիայի երկրորդ ծրագիր»։ Այդ պլանի կերտողին չվիճակվեց տեսնել նրա լիակատար կենսագործումը։ Լենինի մահից հետո Կոմունիստական պարտիան իր Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ, որին գլխավորում էր Ի. Վ. Ստալինը, հաջողությամբ կենսագործեց լենինյան պլանը։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել և գործարկվել է մեծ և միջին կարողություն*



*ունեցող ավելի քան 300 էլեկտրակայան։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1913 թվականի համեմատությամբ, աճել է 86 անգամ։*

*Հավատարիմ մեծ Լենինի պատգամներին՝ մեր պարտիան հետևողականորեն վարում է հասարակական արտադրության անընդհատ վերելքի քաղաքականություն, ապահովելով արտադրության միջոցների արտադրության առավել աճը։ ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը մշակեց սոցիալիստական արդյունաբերության նոր վերելքի ծրագիր, նշեց արդյունաբերության հետագա տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրները։ Պարտիան բացառիկ նշանակություն է տալիս նորագույն տեխնիկայի հետագա զարգացմանն ու արմատավորմանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և այդ հիման վրա՝ աշխատանքի արտադրողականության աճմանը։ Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, աշխատանքի արտադրողականությունը՝ դա, վերջին հաշվով, ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար։*

*Լենինը և Ստալինը ծանր ինդուստրիան համարում էին գյուղատնտեսական արտա-*

դրության հսկայական աճման աղբյուր։ Նրանք նշում էին, որ անհրաժեշտ է գյուղատնտեսությունը հագեցնել ժամանակակից մեքենաներով, անընդհատ կատարելագործել գյուղատնտեսական տեխնիկան։ «Բանն այստեղ ոչ միայն տեխնիկան է առհասարակ,— գրել է Ստալինը,— այլ այն, որ տեխնիկան չի կարող կանգնած մնալ մի տեղում, նա պետք է մշտապես կատարելագործվի, որ հին տեխնիկան պետք է հանվի շարքից և փոխարինվի նորով, իսկ նորը՝ նորագույնով։ Առանց դրան անհնարին է մեր սոցիալիստական հողագործության առաջընթացը, անհնարին է թե՛ մեծ բերքը, թե՛ գյուղատնտեսական մթերքների առատությունը» (Ի. Ստալին «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում», էջ 207—208, Հայպետհրատ, 1953)։

Սոցիալիստական ինդուստրիան մեր գյուղատնտեսությունը զինել է հզոր տեխնիկայով։ Կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏ կայաններն ունեն ավելի քան մեկ միլիոն 400 հազար տրակտոր (15 ուժանոցի փոխարկած), 350 հազար հացահատիկային կոմբայն, ավելի քան 450 հազար բեռնատար ավտոմոբիլ և բազմահազար այլ մեքենաներ։ Առանց այդ հզոր տեխնիկայի ան-



հնարին կլիներ խամ ու խոպան հողերի յուրացման խնդիրների լուծումը, հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը։ Այժմ երկրի ցանքատարածությունը, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 27 տոկոսով։ Յուրացված է ավելի քան 30 միլիոն հեկտար խոպան հող։ Միայն այս տարվա ընթացքում ավելի քան չորս անգամ ավելացել է եգիպտացորենի ցանքատարածությունը, որը մեծ նշանակություն ունի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Չնայած կլիմայական ոչ նպաստավոր պայմաններին, մանավանդ Ղազախստանում, այս տարի երկրում համախառն բերքն ընդհանուր առմամբ անցյալ տարվանից բարձր էր։ Առ 1-ը նոյեմբերի 129 միլիոն փութ ավելի հացահատիկ է մթերվել, քան 1954 թվականին։

Սակայն չնայած դրան, գյուղատնտեսության ներկա մակարդակը դեռևս չի բավարարում պարենամթերքի ասպարեզում երկրի աճող պահանջները, ինչպես նաև՝ գործվածքեղենի, կոշկեղենի ու ժողովրդական սպառման այլ առարկաների արտադրության համար անհրաժեշտ հումքի պահանջները։

Կոլտնտեսականների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների առջև խնդիր է դրված՝ հասնել գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հուժկու վերելքի, երկրին տալ ավելի շատ հացահատիկ, միս, կաթ, բուրդ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Չի կարելի մոռանալ, որ առաջավոր կոլտնտեսությունների կողքին՝ մենք ունենք դեռևս ետ մնացող, տնտեսապես թույլ կոլտնտեսություններ։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միջոցներ են ձեռք առնում վերացնելու գյուղատնտեսության ասպարեզում եղած թերությունները, օգնում են կոլտնտեսային գյուղացիությանը պայքարելու այդ թերությունների դեմ։ Այս կապակցությամբ տեղին է հիշել Ստալինի հետևյալ հիանալի խոսքերը. «...Եթե բոլոր կոլտնտեսականները,— բոլորը, այլ ոչ թե միայն մեծամասնությունը,— ազնվորեն աշխատեն, կոլտնտեսությունները կհեղեղվեն մթերքներով, նրանք կհեղեղվեն ամեն տեսակ բարիքով, և մեր երկիրը կդառնա աշխարհի ամենահարուստ երկիրը»։

Պարտիան հսկայական նշանակություն է



տալիս աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Ստալինը նշում էր, որ դեպի կոմունիզմ անցումը նախապատրաստելու համար հարկավոր է հասարակության անդամներին վերադաստիարակել կուլտուրապես, բոլոր բանվորներին և բոլոր գյուղացիներին դարձնել կուլտուրական և կրթված մարդիկ։

Մեր երկրում հսկայական թռիչք է կատարվել կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Եթե Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից առաջ բնակչության 76 տոկոսը անգրագետ էր, ապա դեռ նախքան համաշխարհային երկրորդ պատերազմը մեր երկրում հիմնականում վերացված էր անգրագիտությունը։ Այժմ ՍՍՌՄ տարրական, յոթնամյա, միջնակարգ դպրոցներում հասակավորների դպրոցներում, աշխատանքային ռեզերվների սիստեմում, տեխնիկումներում սովորում է գրեթե 35 միլիոն մարդ։ Ավելի քան մեկ միլիոն 700 հազար մարդ սովորում է բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Մեզանում ստեղծվել են իսկական ժողովրդական ինտելիգենցիայի հիանալի կադրեր։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ աշ-

քնատում են ավելի քան հինգ և կես միլիոն մասնագետներ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ։

Սովետական էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացումը նպաստում է բազմազգ սոցիալիստական պետության հզորության բարձրացմանը, նրա միջազգային հեղինակության հետագա աճմանը։ Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերում մեր պետության ուժեղացման նկատմամբ, որը կոմունիզմի կառուցման գլխավոր գործիքն է, նրա ուժի և հզորության աղբյուրների ամրապնդման նկատմամբ։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է, որի մեջ ղեկավար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ պաշտպանեց լենինյան այդ դրույթը տրոցկիստական-բուխարինական դավաճանների ու կապիտուլյանտների հարձակումներից և հետևողականորեն կենսագործեց այն։ Կոմունիստական պարտիան կոփեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ամրակուռ



դաշինքը, այդ դաշինքը դարձրեց այն վճռական ուժը, որը ապահովեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Այդ մեծ ուժը սովետական ժողովրդի նոր հաջողությունների աղբյուրն է՝ կոմունիզմի կառուցման փառապանծ ճանապարհին։

Վ. Ի. Լենինը մշակեց պարտիայի տեսական ծրագիրը և քաղաքականությունը ազգային հարցում։ Նա էր մեր երկրի ժողովուրդների բարեկամության ոգեշնչողը։ Ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրային դրույթները իրենց հետագա ստեղծագործական զարգացումը գտան Կոմունիստական պարտիայի որոշումներում, Ի. Վ. Ստալինի աշխատություններում և ելույթներում։ Անդուլ կերպով աշխատելով ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման համար, Ստալինը այդ բարեկամության մեջ էր տեսնում Սովետական բազմազգ պետության անհաղթահարելի ուժի աղբյուրը։

Կոմունիստական պարտիայի մշտական մտահոգությունը սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի ապահովումն է, խաղաղության պաշտպանումը և նոր պատերազմ թույլ չտալը։ Լինելով խաղաղության և ժողովուրդների խաղաղ գոյակցու-

թյան անխոնջ մարտիկ, Ստալինը նշում էր,
որ Սովետական Միության շահերը անբա-
ժան են ամբողջ աշխարհի խաղաղության
գործից։ Ստալինը անգնահատելի ավանդ
մուծեց խաղաղության պահպանման հա-
մաշխարհային շարժման գործում։ Նրա ա-
նունն են կրում «Ժողովուրդների միջև խա-
ղաղության ամրապնդման համար» միջազ-
գային մրցանակները։
Սովետական պետությունը իր խաղա-
ղասիրական արտաքին քաղաքականության
մեջ ելնում է Լենինի այն ցուցումներից,
որ տարբեր սոցիալ-քաղաքական սիս-
տեմների պատկանող պետությունների խա-
ղաղ գոյակցությունը հնարավոր է։ Վարե-
լով խաղաղության քաղաքականություն, ամ-
րապնդելով համագործակցությունը մյուս
պետությունների հետ, անդուլ կերպով պայ-
քարելով միջազգային լարվածությունը թու-
լացնելու համար, Սովետական Միությունը
հենվում է իր ներքին ուժերի վրա, ամբողջ
սոցիալիստական լագերի հզորության վրա։
Սովետական Միության հետ միասին խաղա-
ղության համար ակտիվ կերպով պայքա-
րում են Չինական Ժողովրդական Ռեսպուբ-



լիկան, ժողովրդական դեմոկրատիայի բո-
լոր երկրները։

Կոմունիստական պարտիայի ներքին և արտաքին քաղաքականությունը, որն արտահայտում է աշխատավորների կենսական շահերը, անսահման աջակցություն է ստանում ամբողջ ժողովրդի կողմից։ Սովետական ժողովուրդը հանձին Կոմունիստական պարտիայի՝ տեսնում է իր փորձված ղեկավարին, մեր դարաշրջանի միտքը, խիղճը և պատիվը։

Իր գործունեության մեջ Կոմունիստական պարտիան անշեղ կերպով ղեկավարվում է Լենինի և Ստալինի այն ցուցումներով, որ չի կարելի աքողել սխալներն ու թերացումները աշխատանքում, որ հարկավոր է վճռականորեն բացահայտել մեր պարտիական, պետական, տնտեսական և հասարակական գործունեության մեջ եղած թերությունները, ժամանակին վերացնել դրանք և հասնել մեր ամբողջ աշխատանքի հետագա վերելքի։

Մեր երկիրն այժմ ընթանում է դեպի ՍՄԿՊ 20-րդ համագումարը։ ՍՍՌՄ աշխատավորները հարազատ Կոմունիստական պարտիայի հերթական, 20-րդ համագումա-

րի առաջիկա հրավիրումը պատմական հսկայական նշանակություն ունեցող իրադարձություն են համարում։ Սովետական մարդկանց բազմամիլիոն մասսաների ջանքերը ուղղված են այն բանին, որպեսզի պարտիայի 20-րդ համագումարը նշանավորեն աշխատանքային նոր հաղթանակներով, ստեղծագործական աշխատանքի նոր հաջողություններով՝ ի բարօրություն Հայրենիքի։

Մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում սովետական ժողովրդին ոգեշնչում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ամենահաղթ դրոշը։

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 50-ԱՄՅԱԿԸ

### Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

Արդեն մեկ տարի է, ինչ սովետական ժողովուրդը լայնորեն նշում է ռուսական առաջին ռևոլյուցիայի 50-ամյակը։ Պանծալի տարեդարձը նշում են նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների և մյուս երկրների կոմունիստական պարտիաները։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, որ նա հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր փորձը։

Լենինյան պայծառ միտքը վիթխարի լուսարձակի նման լուսավորեց ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի բնույթը, շարժիչ ուժերը, դեպքերի իմաստն ու նշանակությունը։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի փորձով Վ. Ի. Լենինը ցույց տվեց Ռուսաստանի բանվոր դասակարգի,

գյուղացիության, ճնշված ժողովուրդների ազատագրական շարժման մեծ հեռանկարը։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ ռևոլյուցիոն ժամանակաշրջանի ամիսները, շաբաթները, նույնիսկ օրերն ու ժամերը հավասար են «խաղաղ» ժամանակաշրջանների տասնամյակներին։ Եվ իրոք, մեր ռևոլյուցիայի երկու տարում բանվորները, գյուղացիները, ռևոլյուցիոն պարտիաները քաղաքական այնպիսի դաս ստացան, որպիսին կարող էին ստանալ «հանդարտ» ու «անդորր» մի քանի տասնյակ տարիների ընթացքում։

1905—1907 թվականներին հատուկ ուժով ու վառ կերպով դրսևորվեց ժողովրդի ռևոլյուցիոն ստեղծագործությունը. այդ տարիներին պատմական անհրաժեշտությամբ միանգամից պոռթկացին նախորդ տասնամյակների ընթացքում կուտակված դասակարգային, տնտեսական ու քաղաքական հակասությունները, կյանքն անսովոր չափով հարստացավ, հասարակության զարգացման տեմպերն արագացան։ Կյանքի նոր ձևեր հաստատելու համար ակտիվ պայքարի դուրս եկան միլիոնավոր աշխատավորներ, որոնք մինչև այդ իրենց առօրյա գործունեությամբ աննկատելի էին մնում։

Ռուսական ռևոլյուցիան խորը արմատ-



ներ ուներ. նա կոչված էր լուծելու տնտեսական և քաղաքական հասունացած խնդիրները, ոչնչացնելու միահեծանությունը, կալվածատիրությունը և միջնադարյան այլ մնացորդները։ Ռուսաստանը դարձել էր միջազգային իմպերիալիզմի հակասությունների հանգուցակետը. ռևոլյուցիոն կենտրոնը արևմուտքից փոխադրվել էր արևելք։ Ռուսաստանը հղի էր ռևոլյուցիայով և այդ ռևոլյուցիան կատարվում էր պատմական շատ ավելի զարգացած պայմաններում, քան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաները արևմուտքում։

Տնտեսական դաժան շահագործումը, երբ ռուս բանվորից երեք կաշի էին քերթում, գյուղացիների ծայրահեղ աղքատությունն ու թշվառությունը, ազգային ճնշումը, ամբողջ ժողովրդի իրավազրկությունը՝ այս բոլորը ծնում էին և պայմանավորում ռևոլյուցիայի անխուսափելի վերելքը։ Ֆեոդալիզմի մնացորդները մեծապես խանգարում էին Ռուսաստանի ազատ զարգացմանը և կրկնակի վատթարացնում ժողովրդի վիճակը։ Ռուս-ճապոնական պատերազմը և ցարական զորքերի պարտությունը Հեռավոր Արևելքում արագացրին և խորացրին ռևոլյուցիոն ճգնաժամը։ Երկրի տնտեսական ու քաղաքական

վերափոխությունն օրակարգի հարց էր դարձել. դեպի այդ էր տանում 20-րդ դարի հեց սկզբից ծավալված դեպքերի ամբողջ ընթացքը։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պատճառները բացատրում են նրա բնույթն ու առանձնահատկությունները։ Դա բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիա էր։ Սակայն բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաներն էլ տարբեր են լինում. մեր ռևոլյուցիան իմպերիալիզմի ժամանակաշրջանի բուրժուա-դեմոկրատական, ժողովրդական ռևոլյուցիա էր։ Ժողովրդական էր նախ այն իմաստով, որ բուն ժողովուրդը, բանվորներն ու գյուղացիներն էին իրենց մասսայով կազմում ռևոլյուցիայի իսկական շարժիչ ուժը. և երկրորդ, ժողովուրդն իր հատուկ կնիքն էր դնում ռևոլյուցիայի բնույթի և ամբողջ ընթացքի վրա, ռևոլյուցիոն ճանապարհով իրագործում էր իր տնտեսական ու քաղաքական պահանջները՝ ութժամյա բանվորական օր, կալվածատիրական հողերի բռնագրավում, դեմոկրատական ռեսպուբլիկայի հաստատում, ցարիզմի, բյուրոկրատիզմի և միջնադարյան այլ հաստատությունների ոչնչացում, ազգային ճնշման վերացում և այլն։

Ռուս ժողովուրդը չտեսնված ուժով դրսևո-



րեց իր հզորությունը։ Ռևոլյուցիայի հաղթանակի դեպքում պատմության մեջ առաջին անգամ պետք է հաստատվեր բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրա (իրավաբանական տեսակետից՝ ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն)։ Այդպիսի կառավարությունն, իհարկե, կես ճանապարհին կանգ չէր առնի և ժողովրդի հետ միասին (ներքևից և վերևից) կխորացներ կյանքի սոցիալական վերափոխությունները. ռևոլյուցիան բուրժուա-դեմոկրատականից կարճ ժամանակամիջոցում կվերածվեր սոցիալիստականի։ Դա նոր օրինաչափություն էր, բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական ռևոլյուցիաների նոր հարաբերակցություն, որն իր թեորիական հիմնավորումն ու խորագույն վերլուծությունը գտավ Վ. Ի. Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» հռչակավոր գրքում և ՌՍԴԲՊ 3-րդ համագումարի բանաձևերում։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի հզոր թափը պայմանավորված էր նրանով, որ ժողովրդի ռևոլյուցիոն ամբողջ շարժումը գլխավորում էր ռուս բանվոր դասակարգը, հանդիսանալով ռևոլյուցիայի հեգեմոնը։

Ռուս պրոլետարիատը ամենառևոլյուցիոն բանվոր դասակարգն էր, որը 19-րդ դարի վերջին տասնամյակներից սկսած հանդես եկավ որպես հասարակության ամենալուրջ, հետևողական-ռևոլյուցիոն դասակարգը և կարճ ժամանակաընթացքում տնտեսական պայքարից անցավ մասսայական-քաղաքական պայքարի։ Նրա պայքարի մեթոդները ընդօրինակում էին գյուղացիները, զինվորները, ուսանողությունը, բոլոր դեմոկրատական ուժերը։ Ռուս պրոլետարիատը հանդես եկավ որպես միջազգային պրոլետարիատի ավանգարդը, առաջամարտիկը։ Մի շարք հանգամանքներ հատկապես նպաստեցին դրան. բանվոր դասակարգի կենտրոնացումը խոշոր ձեռնարկություններում, նրա իրավազրկությունը, նրա շահագործումը ոչ միայն Ռուսաստանի, այլև օտարերկրյա կապիտալի կողմից։ Ռուս բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ակտիվությունը տասնապատկվում էր շնորհիվ այն բանի, որ այստեղ ստեղծվեց նոր ավանգարդային կազմակերպություն՝ մարքսիստական բոլշևիկյան ամենառևոլյուցիոն պարտիան, նոր տիպի պարտիան, որն իր նմանը չէր ունեցել սոցիալիստական պարտիաների շարքերում։ Բոլշևիկների պարտիան Լենինի ղեկավարու-



թյամբ հերոսության հրաշքներ գործեց։ Լենինը մշակեց պրոլետարիատի շարժման թեորիան, ծրագիրն ու տակտիկան, կազմակերպության ձևերը։

1905 թվականի Հունվարյան արյունոտ կիրակիից հետո պրոլետարիատը, իսկ նրան հետևելով նաև գյուղացիները և մյուս դեմոկրատական ուժերը մասսայական պայքարի չտեսնված օրինակներ ցույց տվին։ Բանվոր դասակարգը պատմական ու քաղաքական ստեղծագործության բարձր ձևեր դրսևորեց՝ մասսայական գործադուլներ, ընդհանուր քաղաքական գործադուլ, բանվորական դեպուտատների Սովետներ, զինված ապստամբություն, մասսայական բարիկադային կռիվներ, պարտիզանական կռվի հոյակապ օրինակներ։

Մեր առաջին ռևոլյուցիայի այդ բոլոր առանձնահատկությունները խորապես ընդհանրացված են Լենինի կողմից հետևյալ հանճարեղ ֆորմուլայի մեջ. ռևոլյուցիան իր առաջ դրված անմիջական փոփոխությունների բնույթով բուրժուա-դեմոկրատական էր, իր շարժիչ ուժերով՝ բանվորա-գյուղացիական, պայքարի մեթոդներով ու ձևերով՝ պրոլետարական։ Ռևոլյուցիոն պայքա-

րի այդ մեթոդներն ու ձևերը, զինված ապստամբությունը, ընդհանուր քաղաքական գործադուլը մեծագույն պատմական երևույթներ էին և նշանակում էին մեծ պրոգրես համաշխարհային պատմության մեջ։ Եվ իրոք, հենց Սովետները, որ ստեղծվեցին 1905 թվականի ամռանը բանվորների կողմից, համաշխարհային-պատմական նշանակություն ունեցան։ Սովետները ժողովրդի ինքնատիպ ստեղծագործության, նրա քաղաքական ինքնագործունեության հիանալի արտահայտություններն էին։ Լինելով զինված ապստամբության օրգաններ, Սովետները ռևոլյուցիայի հաղթանակի դեպքում պետք է վերածվեին ռևոլյուցիոն իշխանության օրգանների։ 1917 թվականին Սովետները դարձան համառուսական կազմակերպություններ, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով նրանք վերածվեցին պրոլետարական դիկտատուրայի պետական ձևի, միևնույն ժամանակ դրսևորելով իրենց միջազգային բնույթը։ Ռուս բանվորների օրինակով ռևոլյուցիոն Սովետներ էին ստեղծվում արևմուտքի պրոլետարների կողմից՝ Գերմանիայում, Ֆրանսիայում, Անգլիայում և այլ եր-



կըրներում, որոնք սակայն պատմական դեպքերի բերումով չկարողացան իշխանությունն իրենց ձեռքը վերցնել։ Առանց Սովետների, սովորեցնում է Լենինը, բոլշևիկները չէին կարող իշխանությունն իրենց ձեռքում պահել, որովհետև բուրժուական պետական ապարատով պրոլետարիատի դիկտատուրան չէր կարող ամուր լինել, իսկ նոր պետական ապարատ կարճ ժամանակում չէր կարելի ստեղծել։

Ռուսական առաջին ռևոլյուցիան ցույց տվեց, որ «ռևոլյուցիոն դասակարգերի ուժերն ու նրանց պատմական ստեղծագործության հարստությունը շատ ավելի է, քան թվում է դադարի ժամանակամիջոցներում» և որ «ռևոլյուցիան ավելի ուժեղ է, քան թե կարծում են օպորտունիստ-թերահավատները» (Լենին)։ Մեր ռևոլյուցիայի մեծագույն դասերից մեկն այն է, որ պատմությունն իրոք պետք է դիտել ժողովրդական մասսաների ստեղծագործական մեթոդների տեսակետից։ Մյուս ուսանելի դասն այն է, որ պրոլետարիատն անպարտելի է, եթե նա պառակտված չէ և համախմբված է մեկ միասնական ռևոլյուցիոն, անձնվեր, համարձակ պարտիայի շուրջը։ Ռևոլյուցիայի

հիմնական դասերից մեկն, իհարկե, բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության եղբայրական դաշինքն է բանվոր դասակարգի ղեկավարությամբ և ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի առաջնորդությամբ։

Հսկայական է ռուսական առաջին ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական նշանակությունն ու ազդեցությունը։ Նրա հզոր ալիքները խոշորագույն արձագանք գտան արևմուտքից մինչև արևելք, Գերմանիայից մինչև Չինաստան, Իրանից մինչև հեռավոր երկրները։ 1905 թվականին գերմանական պրոլետարիատը ռևոլյուցիոն խմորումներ ապրեց, գործադուլներ ու ապստամբություններ կազմակերպեց ռուսական ռևոլյուցիայի ազդեցության տակ։ Նոր հայտնագործված պատմական փաստաթղթերը կրկին հաստատում են այդ։ Չինական ժողովուրդը ռուսական ռևոլյուցիայի ազդեցության տակ ռևոլյուցիոն ապստամբության ելավ ֆեոդալա-կայսերական կարգերի դեմ 1912 թվականին։ Ռևոլյուցիաներ



տեղի ունեցան Իրանում, Թյուրքիայում և այլ երկրներում։

Անչափ մեծ է ռուսական առաջին ժողովրդական ռևոլյուցիայի դերը սովետական բոլոր ժողովուրդների համար. հավատը դեպի սեփական ուժերը, կազմակերպության ռևոլյուցիոն ձևերը, պատմական մեծագույն ստեղծագործության ընդունակությունը, պրոլետարիատի ինքնագիտակցությունը, այս բոլորը նոր աստիճանի բարձրացրին պրոլետարիատի, աշխատավորների ազատագրական շարժումները, վիթխարի դեր խաղացին հետագայում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գործում։ 1905 թվականի ռևոլյուցիան հսկայական պատմական փորձ էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համար։

---

# ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ

Մտնելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, ԿԱՆԱԶ-ի կոլեկտիվը պարտավորվել էր այս տարվա երկրորդ կիսամյակի արտադրանքի թողարկման պլանը կատարել 102 տոկոսով, սիստեմատիկաբար բարձրացնել արտադրանքի որակը, տնտեսել հումք, էլեկտրաէներգիա, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը 0,5 տոկոսով։

Այժմ ստանձնած պարտավորությունները գործարանի կոլեկտիվը պատվով է կատարում։ Այս տարվա 10 ամսվա արտադրական պլանը գերակատարված է, խնայված է ավելի շատ էլեկտրաէներգիա, քան նախատեսված էր սոցիալիստական մրցության պայմանագրով, տնտեսված է 400 հազար ռուբլու արժողությամբ հումք։ Միայն վերջին երեք ամսում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 113,3 տոկոսով, խնայվել է 224 հազար ռուբլու հումք և արտադրանքի ինքնարժեքն իջել է 26 տոկոսով։



Ձեռք բերված այդ հաջողություններն ամենից առաջ արդյունք են այն բանի, որ գործարանում անընդհատ կատարելագործվում են արտադրության տեխնոլոգիական պրոցեսները և արտադրության մեջ արմատավորվում է առաջավոր փորձը։ Օրինակ, ընթացիկ տարվա երրորդ եռամսյակում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից եղել է 132 նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկություն։ Նորարարական և ռացիոնալիզատորական այդ առաջարկություններից 65-ը արդեն ներդրվել է արտադրության մեջ, որի շնորհիվ գործարանը մինչև տարվա վերջը կստանա ավելի քան 400 հազար ռուբլու օգուտ։ Գործարանում նորարարական և ռացիոնալիզատորական իրենց արժեքավոր առաջարկություններով աչքի են ընկնում 3—2 ցեխի աշխատողները։ Նրանք միայն հոկտեմբեր ամսում արել են 22 արժեքավոր առաջարկություն, որոնց մեծ մասն ընդունվել է գործարանի տեխնիկական խորհրդի կողմից և ներդրվել արտադրության մեջ։ Ռացիոնալիզատորական այդ առաջարկությունները լայն հնարավորություն են ստեղծում ավելի ար-

դյունավետ օգտագործելու տեխնիկան և ապահովելու մեքենաների ու սարքավորումների անխափան աշխատանքը։ Այսպես, օրինակ, նույն ցեխի նորարար Գ. Գասպարյանը առաջարկություն էր արել պոմպի աշխատանքը բարելավելու մասին։ Արտադրության մեջ արմատավորելով նրա նորարարական առաջարկությունը, այժմ նոր պոմպը, ի տարբերություն հնի, երկար ժամանակ աշխատում է առանց վերանորոգման և անխափան։ Ինժեներ Վ. Վարդանյանը նկատել էր, որ «բունկերները» շատ բանվորական ձեռք են զբաղեցնում։ Նա հանգամանորեն ուսումնասիրեց այդ սարքավորման աշխատանքը բարելավելու հնարավորությունները և արեց նորարարական առաջարկություն։ Նրա խորհրդով գտնվեց լավագույն միջոց «բունկերների» վրա կատարվող ձեռքի աշխատանքը փոխարինելու մեքենայական աշխատանքով։ Նորարար Վարդանյանի առաջարկությունը մեծ օգուտ տվեց գործարանին։ Գործարանում մեծ չափով աճել է նաև ռացիոնալիզատորների թիվը։ Եթե 1954 թվականին ռացիոնալիզատորական առաջարկություններ են արել 75 բանվորներ և ինժեներատեխնիկական աշխատողներ, ապա ընթացիկ



տարվա անցած տասը ամիսների ընթացքում նրանց թիվը հասնում է 130 հոգու։

Ստանձնած պարտավորությունների կատարման գործում, ինչպես նշվեց վերևում, մեծ դեր խաղաց այն հանգամանքը, որ արտադրության մեջ արմատավորվեց աշխատանքի առաջավորների փորձը։ Ուսումնասիրելով վոլխովցիների և ուրալցիների առաջավոր փորձը, սկզբից մրցության առաջավորները, իսկ հետագայում ամբողջ կոլեկտիվն սկսեց աշխատել նրանց օրինակով։ Արդյունքը եղավ այն, որ այժմ գործարանում մեծ չափերով բարձրացել են արտադրանքի որակական և քանակական ցուցանիշները։

Նոր տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ զգալի չափով բարձրացել է ագրեգատների արտադրողականությունը։ 1954 թվականի համեմատությամբ այժմ ագրեգատների արտադրողականությունը բարձրացել է 4 տոկոսով։

Չբավարարվելով ձեռք բերված հաջողություններով, բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները ամեն օր կանգնում են պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպած հերթափոխության և կատարում ու գերակատարում են ստանձնած պարտավորությունները։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Երևանի Կոմպրեսորների գործարանի ագիտկոլեկտիվի ղեկավար

*Աշխատավորների մեջ ագիտացիոն-բացատրական աշխատանքը բարելավելու միջոցներից մեկը՝ ագիտատորներին մշտական օգնություն ցույց տալն է։ Գործնականում այդ մենք կատարում ենք ագիտատորների համար կազմակերպված սեմինար պարապմունքների, հրահանգչական խորհրդակցությունների, ագիտատորներին անհրաժեշտ գրականությամբ ապահովելու և շատ այլ միջոցներով։ Բայց ագիտատորներին օգնելու լավագույն միջոցներից մեկը, որից հաճախ օգտվում ենք մենք, այդ այն է, որ սիստեմատիկաբար լսում ենք ագիտատորների զրույցները տեղում։ Աշխատանքի այդ մեթոդը հնարավորություն է տալիս ստուգելու, թե ագիտատորի տվյալ զրույցը որքա-*



*նով էր բավարարում ունկնդիրներին, այն նպատակասլաց էր, թե ոչ, ագիտատորը ինչպիսի օգնության կարիք է զգում և այլն։*

*Հենց այդ նկատի ունենալով վերջերս լսեցինք մեր գործարանի ձուլման ցեխի ագիտատոր Հր. Աղախանյանի զրույցը։ Նա իր զրույցի սկզբում խոսեց այն մասին, թե ինչպիսի աննախընթաց վերելք է ապրում այժմ մեր հայրենական մեքենաշինությունը։ Իսկ այնուհետև նա ունկնդիրներին հիշեցրեց այն խնդիրների մասին, որ ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը դրեց մեքենաշինության աշխատողների առջև։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հուլիսյան պլենումը,— ասաց նա,— մեր երկրի արդյունաբերության և մասնավորապես մեքենաշինության աշխատողներից պահանջեց՝ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, տիրապետել ժամանակակից առաջավոր տեխնիկային, երկրին տալ ավելի կատարելագործված մեքենաներ։*

*Այժմ մեր լայնածավալ երկրի բոլոր գործարաններում արտադրության մեջ աշխատող բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները պայքարում են Հուլիսյան պլենումի որոշումները իրագործելու, պարտիայի*

XX համագումարը նոր հաջողություններով դիմավորելու համար։ Այդ ուղղությամբ խոշոր անելիքներ ունենք նաև մենք՝ ձուլման ցեխի աշխատողներս,— ասաց ագիտատորը։

Արտադրանքի որակը բարելավելու վերաբերյալ պարտիայի առաջադրած խնդիրները ունկնդիրներին պարզաբանելուց հետո, նա պատմեց, թե ինչ են արել գործարանի կոլեկտիվը և հատկապես իրենց ցեխի աշխատողները կոմպրեսորների որակը բարձրացնելու ուղղությամբ։

Այս տարվա հունվար ամսին, ինչպես նախատեսված էր հինգերորդ հնգամյա պլանով,— շարունակում է ագիտատորը,— մեր գործարանի արտադրանքի թողարկման ծավալը, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 80 տոկոսով։ 1955 թվականի անցած 10 ամսվա համախառն արտադրանքի պլանը գործարանը կատարել է 102 տոկոսով, ապրանքային արտադրանքի պլանը՝ 102 տոկոսով։

Ընթացիկ տարում գործարանը զգալի հաջողություններ է ձեռք բերել աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ։ Օրինակ. անցյալ 9 ամսվա ընթացքում աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել է 109,6 տո-



կոսով, ինքնարժեքի իջեցման պլանային առաջադրանքը գերակատարվել է 2,6 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ գործարանը տնտեսել է մեկ միլիոն 99 հազար ռուբլի։ Թողարկվող վկ—3—5 կոմպրեսորի որակը զգալի չափով լավացել է, օրինակ, յուրաքանչյուր կոմպրեսորի քաշը իջել է 80 կիլոգրամով, դրա շնորհիվ ընթացիկ տարում տնտեսվել է հսկայական քանակությամբ մետաղ և միաժամանակ բարձրացել է արտադրանքի որակը։

Արտադրանքի որակի բարելավման մասին վկայում է այն փաստը, որ այս տարի կոմպրեսորներ սպառող ոչ մի ձեռնարկություն կամ հիմնարկ չի բողոքել։ Ընդհակառակը, մեր կոմպրեսորների բարձր որակի մասին ստացվել են նամակներ, որով գնորդները գոհունակությամբ նշում են մեր արտադրած մեքենաների լավ աշխատանքը։

Պարզաբանելով արտադրանքի որակի բարելավման գործում ձեռք բերված հաջողությունները, ագիտատորը միաժամանակ պատմեց գործարանում կատարվող նորարարական և ռացիոնալիզատորական աշխատանքի մասին։ Ընթացիկ տարում,— ասաց ագիտատորը,— բազմաթիվ նորարարական

առաջարկություններ են արվել, որոնց խոշոր մասը արմատավորվել է արտադրության մեջ։ Նորարարական առաջարկների արմատավորման շնորհիվ գործարանը ավելի քան 180 հազար ռուբլու օգուտ է ունեցել։ Նորարարական առաջարկություններ են արել նաև մեր ցեխի աշխատողներ Արշավիր Թովմասյանը, Ավետիք Մուշեղյանը, Արսեն Քեշիշյանը և ուրիշները։ Օրինակ, մեր ցեխի վարպետ Թովմասյանի առաջարկությամբ ՎԿ—3—5 կոմպրեսորի կարևոր մասերից մի քանիսի (մխոց, ծածկոց) ձուլվածքին խառնեցին փոքր քանակությամբ ալյումին։ Այդ նորարարության շնորհիվ ձուլված մասը դարձավ ավելի ամուր, խիստ պակասեց խոտանը, բարձրացավ արտադրանքի որակը, և գործարանը 55 հազար ռուբլու օգուտ ստացավ։

Ագիտատորը նորարարական և ռացիոնալիզատորական մի շարք առաջարկությունների մասին խոսելուց հետո նշեց, որ նորարարական առաջարկությունների և առաջավոր փորձի ներդրման շնորհիվ ձուլման ցեխում պիտանի ձուլվածքի թողարկումը պլանով նախատեսված 64 տոկոսի փոխարեն, այժմ հասել է 70,1 տոկոսի։ Արտադրանքի խոտանը, անցյալ տարվա համեմատությամբ, իջել է 20 տոկոսով։ Մեզ



մոտ կան աշխատանքի բազմաթիվ առաջավորներ, ինչպես, օրինակ Ն. Գյուլհովհաննիսյանը, Հ. Մակարյանը, Դ. Խաչիկյանը, Ա. Ղազարյանը, Մ. Սոբաջյանը և շատերը, որոնք իրենց արտադրական նորմանները կատարում են 200—250 տոկոսով և տալիս են միայն գերազանց որակի արտադրանք։

Զրույցի վերջում ագիտատորը բացահայտեց մի շարք թերություններ։ Մեզ մոտ,— ասաց նա,— ձուլման ցեխում դեռևս թերություններ շատ կան։ Առանձին աշխատողներ խախտում են արտադրության տեխնոլոգիական ռեժիմը, որի հետևանքով երբեմն բարձրանում է խոտան արտադրանքի տոկոսը։

Ագիտատորի զրույցի այդ մասը մտքերի աշխույժ փոխանակություն առաջ բերեց ունկնդիրների մեջ։ Նրանք իրենց հերթին բացահայտեցին մի շարք թերություններ և արեցին խելացի առաջարկություններ աշխատանքում եղած թերությունները վերացնելու մասին։

Ագիտատորի այդ զրույցը փորձի փոխանակման կարգով քննության առանք ագիտկոլեկտիվի նիստում, ուր ագիտատորները նշեցին զրույցի ուսանելի կողմերը և միաժամանակ քննադատական դիտողություններ արեցին։

---

# ԲԻՐՄԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

Բիրման գտնվում է ասիական մայր ցամաքի հարավ-արևելյան մասի տաք գոտում և սահմանակից է Հնդկաստանի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Տայլանդի հետ։ Բիրման ունի ավելի քան 677 հազար քառակուսի կիլոմետր տարածություն, այսինքն համարյա այնքան, որքան Անգլիայի և Շվեդիայի տերիտորիաները՝ միասին վերցրած։ Բնակչության թիվը հասնում է մոտ 20 միլիոն մարդու, որի մեծամասնությունը՝ 12 միլիոնը բիրմացիներ են։ Բիրմայի մայրաքաղաքը Ռանգունն է։ Բիրմայում ձմեռներ չեն լինում։ Խոնավության առատության շնորհիվ Բիրմայի բուսականությունը շատ փարթամ է և բազմազան։ Երկրի տերիտորիայի ավելի քան կես մասը պատած է մերձարևադարձային խիտ անտառներով։

Բիրմայի էկոնոմիկայի հիմքը գյուղատնտեսությունն է, իսկ գլխավոր կուլտուրան՝ բրինձը, որը կազմում է երկրի ցանքատարածությունների երկու երրորդ մասը։ Երկրում տարեկան արտադրվում է մոտ 6 միլիոն տոննա բրինձ, որից 1,5 միլիոն տոննան արտահանվում է։ Բրինձը կազմում է երկրի արտա-



հանության 80 տոկոսը։ Բացի բրնձից, Բիրման արտահանում է թամբակ, ընդեղեն, կաուչուկ և ուրիշ ապրանքներ։

Բիրմայի արդյունաբերությունը հիմնականում ընդգրկված է գյուղատնտեսական հումքի մշակությամբ։ Երկրի արդյունաբերական ձեռնարկությունների երեք քառորդը բրինձ մաքրող գործարաններ են։ Կան նաև թամբակազտիչ, ձիթհան, շաքարի գործարաններ, ալրաղացներ, սղոցարաններ և այլն։ Բիրմայում արդյունահանվում են մի շարք արժեքավոր հանքային հանածոներ, հատկապես վոլֆրամ, որի արտահանությամբ Բիրման աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը։

Բիրման մինչև համաշխարհային երկրորդ պատերազմը հանդիսանում էր Անգլիայի գաղութը։ Բայց Բիրմայի ազատասեր ժողովուրդը երբեք չի հաշտվել անցյալի իր վիճակի հետ, միշտ անհաշտ պայքար է մղել օտարերկրյա շահագործողների դեմ և ձգտել է ստեղծել իր ազգային անկախությունը։

1941 թվականի դեկտեմբերին յապոնական զորքերը օկուպացնում են Բիրման։ Օկուպանտների դեմ մղած պայքարում աճել և ամրապնդվել էր այնպիսի մասսայական կազմակերպություն, ինչպիսին է ժողովրդաազատագրական հակաֆաշիստական լիգան (ԱԼՆՕ), որն իր շարքերում միավորում է երկրի հայրենասիրական բոլոր ուժերը։

Ազգային-ազատագրական հաջող պայքարի շնոր-

հով 1948 թվականի հունվարի 4-ին հռչակվում է Բիրմայի անկախությունը։ Բիրման հայտարարվում է պառլամենտական ռեսպուբլիկա, Բիրմական Միություն։ Այդ անվանումը բացատրվում է նրանով, որ Բիրմայի մեջ մտնում են Շանի, Կարինի, Կաչենի, Կայայի ավտոնոմ պետությունները և Չինի ավտոնոմ օկրուգը։ Բիրմական Միության գլխավոր ղեկավարը համարվում է պրեզիդենտը, որն ընտրվում է պառլամենտի երկու պալատների կողմից, 5 տարի ժամանակով։ Ներկայումս Բիրմայի պրեզիդենտն է Բա Ուն։

Բիրմայի գործադիր իշխանությունը պատկանում է մինիստրների կաբինետին, որը, սկսած 1947 թվականից, անփոփոխ կերպով ղեկավարում է Բիրմայի ականավոր պետական գործիչ Ու Նուն։ Բիրմայի պառլամենտում (որը կազմված է դեպուտատների և ազգությունների պալատներից) տեղերի ճնշող մեծամասնությունը պատկանում է ժողովրդա-ազատագրական հակաֆաշիստական լիգային։ Բիրմական Միության պետական դրոշը կարմիր կտորից է, որի վրա նկարված է վեց աստղ։

Բիրմայի երկաթուղիները, կապի միջոցները, ֆինանսական սիստեմը և արտաքին առևտուրը գտնվում են պետության ձեռքում։ Բիրմական պետությունը 1955 թվականին առևտրական համաձայնագրեր է կնքել Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի և Սովետական Միության հետ։



Բիրմական կառավարությունը այժմ լուրջ միջոցառումներ է ձեռնարկում երկրի անկախությունն ապահովելու և էկոնոմիկան ամրապնդելու համար։ Պետության կողմից մշակվել և ներկայումս հաջողությամբ կենսագործվում է երկրի էկոնոմիկայի զարգացման 8-ամյա պլանը։ Վերջին տարիներին Բիրման էկոնոմիկայի զարգացման գործում հասել է լուրջ հաջողությունների։ 18 տոկոսով ավելացել է հանքանյութերի հանույթը։ Ավելացել է բամբակի մանվածքի, ցեմենտի և շաքարի արտադրանքը։ Նախնական տվյալներով ժողովրդական տնտեսության այս տարվա արտադրանքը անցյալ տարվա համեմատությամբ աճել է 13 տոկոսով։ Գնման ճանապարհով ազգայնացվել են մի շարք ձեռնարկություններ։

Բիրմայի պառլամենտը 1948 թվականին ընդունել է օրենք գնման ճանապարհով հողի ազգայնացման մասին։ Սակայն երկրի խոշոր հողատերերի դիմադրությունը խիստ կերպով խանգարում է կենսագործել հողային ռեֆորմը։ Վերջին տվյալներով, կառավարությանը հաջողվել է ազգայնացնել և գյուղացիներին տալ հողերի միայն 6 տոկոսը։ Երկրում գործում են անգլո-բիրմական խառը ընկերություններ։ Բիրմայի էկոնոմիկայի մի շարք ճյուղերում դեռևս իշխող դեր են կատարում օտարերկրյա, հատկապես անգլիական մոնոպոլիաները։ Բիրմայում ներկայումս գործում են օտարերկրյա 450 ընկերություններ։

Ու Նուի ղեկավարած կառավարությունը վարում է խաղաղասիրական քաղաքականություն և հետևողականորեն հանդես է գալիս ռազմական խմբավորումների դեմ։ Նա պահանջում է, որպեսզի միջազգային բոլոր վիճելի հարցերը լուծվեն խաղաղ ճանապարհով, բանակցությունների միջոցով։ Բիրման դեմ դուրս եկավ Հարավ-Արևելյան Ասիայում ռազմական բլոկի կազմակերպմանը և վճռականորեն պահանջում է վերացնել գաղութային ճնշումը, բոլոր ճնշված ժողովուրդներին տալ ինքնորոշման իրավունք։ Բիրմական կառավարությունը հանդիսանում է Ասիայի և Աֆրիկայի երկրների Բանդունգի կոնֆերանսի կազմակերպիչներից մեկը, որը կարևոր ավանդ մտցրեց միջազգային խաղաղության և համագործակցության հարցերում։

Երբ Անգլիայի նախկին գաղութ Բիրման 1948 թվականի հունվարին դուրս եկավ Բրիտանական թագավորության կազմից, Սովետական Միությունը առաջիններից մեկն էր, որ դիվանագիտական հարաբերություններ հաստատեց Բիրմայի հետ։ Սովետական Միությունը առաջին երկիրն է, որ համաձայնեց Բիրմայի առաջարկության պայմաններին, նրան տեխնիկական օգնություն ցույց տալու հարցում։ Գնալով ավելի է ամրապնդվում սովետական և բիրմական ժողովուրդների բարեկամությունը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և Բիրմական Միության պրեմյեր-մինիս-



տրը Ու Նուի 1955 թվականի սեպտեմբերի 3-ի համատեղ հայտարարության մեջ ասված է, որ ինչպես սովորական, այնպես էլ ատոմային սպառազինությունների մրցավազքը ոչ միայն պետք է դադարեցվի, այլև այն զգալի չափերով պետք է կրճատվի։ Պետք է արգելել միջուկային և ջերմա-միջուկային զենքի արտադրությունը, փորձարկումն ու օգտագործումը։ Միաժամանակ պետք է միջազգային ներգործուն վերահսկողություն սահմանվի զինաթափման իրականացման նկատմամբ։

Մինիստրների Սովետի Նախագահը և պրեմյեր-մինիստրը դատապարտում են ռազմական բլոկների ստեղծման քաղաքականությունը և գտնում են, որ ռազմական բլոկների մեջ չմտնելու քաղաքականությունն ապահովում է ժողովուրդների անվտանգությունը։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Ռևոլյուցիան Ռուսաստանում, Ռևոլյուցիայի սկիզբը Ռուսաստանում, Ռևոլյուցիոն օրեր, Առաջին դասերը, *Երկեր, հատոր 8, էջ 71—72, 105—109, 111—139, 160—166, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Ռևոլյուցիայի դասերը, *Երկեր, հատոր 16, էջ 386—396, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Ռևոլյուցիան և կոնտրռևոլյուցիան, *Երկեր, հատոր 13, էջ 132—141, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Ճառ 1905 թվականի դեկտեմբերյան ապստամբության տարեդարձին նվիրված միտինգում, *Երկեր, հատոր 30, էջ 346—353, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — Բոլոր բանվորներին, Երկու գոտեմարտը, Արդի մոմենտը և բանվորական պարտիայի միավորիչ համագումարը, *Երկեր, հատոր 1, էջ 214—222, 282—311, Հայպետհրատ, 1946։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 50 տարին *(1903—1953)։ Առանձին բրոշյուր։*

Ռուսական ռևոլյուցիայի 50 տարին *(ՍՄԿՊ Կենտ-*



*կոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ինստիտուտի թեզիսները)։ Առանձին բրոշյուր։*

## *2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԽԱՂԱՂ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների ժնևի խորհրդակցության արդյունքները։ *Զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Երրորդ սեսիայում 1955 թ. օգոստոսի 4-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի օգոստոսի 5-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆԻ ԵՎ Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԻ ելույթները Հնդկաստանում և Բիրմայում *տպագրված «Ս. Հ.»-ում։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1955 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ հայտարարությունը Չորս տերությունների արտաքին Գործերի մինիստրների ժնևի խորհրդակցությունում՝ Եվրոպայի անվտանգության հարցերի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Սովետա-նորվեգական կոմյունիկե, *տպագրված «Ս. Հ»-ի 1955 թվականի նոյեմբերի 16-ի համարում։*

### 3. ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումը՝ *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1955 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը, *«Պրավդա»-ի 1955 թվականի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի հուլիսի 19-ի համարում։*

Հայաստանի աշխատավորները արտադրական նոր հաջողություններով են դիմավորում ՍՄԿՊ 20-րդ համագումարը, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 29-ի համարում։*

Ի պատիվ ՍՄԿՊ 20-րդ համագումարի, *«Ս. Հ»-ի առաջնորդողը տպագրված 1955 թվականի դեկտեմբերի 1-ի համարում։*

Պարտիայի 20-րդ համագումարը նշանավորենք նոր-



հաջողություններով, *«Ագիտատորի բլոկնոտ» № 22, 1955։*

### 4. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումը՝ *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին, Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955, էջ 16—21։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1955 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Զարգացնել նորարարների ստեղծագործական նախաձեռնությունը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի նոյեմբերի 23-ի համարում։*

### 5. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ՓԱԿԵՆՔ 1955 ԹՎԱԿԱՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության

կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին: *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Կոնկրետ, օպերատիվ կերպով ղեկավարել արդյունաբերությունը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հոկտեմբերի 20-ի համարում։*

## 6. ԱՅԺՄՎԱՆԻՑ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: *Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին։ Հայպետհրատ, 1953։*

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին: ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը: *Հայպետհրատ, 1953, էջ 126—136։*

ՄՏԿ-ների աշխատողների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը Սովետական Միության մեքենա-տրակտորային կայանների բոլոր բանվորներին, մասնագետներին և ծառայողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունվարի 30-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ





Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԲԱՑՎԱԾ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1956 թվականի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի դրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ*

12 ամիսը—12 ռ.,
6 ամիսը—6 ռ.,
1 համարը—50 կոպեկ։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

**Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 23 1955 г.**

*ՎՖ 114270 Պատվեր 1041 Տիրաժ 8570*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*